մը մէջ որ կը չհնուի այս պահուս վարչապետա - կան չէնքին դիմացը ։
Այս յեղափոխական մեծ դէմքին վրայ կը խօ-սինք առանձին ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆԱԽԱՑԻՆ ՄԵԾ ռազմափորձերը սկսան երէկ Կասաքոնիոյ ծովածոցին մէջ ։ Կը մասնակցին 100 անգլիական եւ ֆրանսական ռազմանաւեր եւ պիտի տեւեն երեք օր ։ Ծրագիրն է՝ պաշտպանել նաւային կարաւան մը, ընդծովեաներու եւ ցամաքային Թնդանօթներուն յարձակման դէմ ։

ՆՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ բռնապետը Թիթօն տապալելու համար կոմինֆորմը նոր յատակագիծ մը պատրաստեր է, որուն համաձայն սահմանագլուխի միջադէպեր եւ ներքին ըմբոստութիւններ պիտի սարքուին եւ պաշարումը պիտի սաստկացուի ։ Միւս կողմէ, այս ձեռնարկները հակակշռելու համար ամերիկեան կառավարութիւնը պիտի օժանդակէ Թիթոյի ։

ԱՄԵՐԻԿԱՅԻ ելմտական նախարար Ճոն Սնայտէր Փարիզ ժամանեց ։ Պիտի այցելէ արեւմտեան Եւրոպայի մայրաքաղաքները ուսումնասիրելու համար տնտեսական պայմանները եւ դրամներու միջազգային կացութեան բարեփոխման խնդիրը ։

ՏԱՔԸ անտանելի աստիճանի մը հասած է այս պահուս ։ Փարիզի մէջ 27, Թուլուզ 31, Մատրիտ 36, իսկ Նիւ Եորք 40 աստիճան շուքի մէջ ։ Շատ բերքեր վտանգուած են ։

«ԵՐԿԱԹԵԱՅ ՎԱՐԱԳՈՅՐ» ժապաւէնը որուն դէմ ցոյցերը կը շարունակուէին համայնավարներու կողմէ, Շան զ'Էլիզէի մէկ սինէմային մէջ, կառավարութիւնը գրաւեց, որովհետեւ ռուսական երաժշտական ընկերութիւնը բողոքած էր թէ անոր երաժշտութիւնը գողցուած է խորհրդային հեղինակներէ ։

ՍԵՒ ՈՒ ՃԵՐՄԱԿ, առաջին անգամ ըլլալով ամերիկեան պատմութեան մէջ, ներկայ եղած են Ուաշինկթընի մէկ թատրոնին մէջ ուր կը ներկայացուէր ֆրանսացի հեղինակ Ժիրոտուի «Ամֆիթրիոն» թատերախաղը ։ Վերջերս դեռ, հանրալուղարանի մը մէջ սեւեր մտած ըլլալով, ճերմակները յարձակած եւ կռիւ մը տեղի ունեցած էր ։

ՀՐԴԵՀՆԵՐ հրոյ ճարակ ըրին Թուրքուանի մէջ հիւսուածեղէնի նիւթերու երկու մեծ մթերանոցներ, պատճառելով 200 միլիոնի վնաս ։ Պատճառը կը նկատուի սաստիկ տաքերուն հետեւանքով ինքնաբերաբար կրակ առնելը ։

ԹՈՒՐ ՏԸ ՖՐԱՆՍԻ երրորդ հանգրուանը՝ Պրիւքսէլ Պուլոնեը, 211 քիլոմեթրը 6 ժամ 6 վայրկեանէն կտրեց պելճիքացի Քալլէնս որ առաւ դեղին շապիկը ։ Իսկ չորրորդ հանգրուանը՝ Պուլոնեը Ռուան, 185 քիլոմեթրը 5 ժամ 10 վայրկեանէն շահեցաւ ֆրանսացի Թէսէր, որուն յաջորդեց անմիջապէս Մարինէլլի եւ իր առաւելութեան պատճառով՝ այս վերջինը ստացաւ դեղին շապիկը ։
Տասը մրցորդներ եւս լքեցին կամ դուրս հանուեցան ։ Թիէթարի սրունքը կոտրեցաւ ։ Պուլոնեի մօտ, հանրակառք մը շրջուելով 22 հոգի վիրաւորուեցան ։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Հ. Յ. Դ. Սէնթ Անի Թաթուլ խումբը կազմակերպած է բացօթեայ հանդէս մը այս շաբաթ 9 Յուլիս, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, տեղւոյն դպրոցին հրապարակին վրայ, հովանաւորութեամբ Հ.Յ.Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի ։ Իրենց մասնակցութիւնը կը բերեն տեղւոյս Կապոյտ Խաչը եւ Նոր Սերունդի Քեռի խումբը, Սիփան երգչախումբը ղեկավարութեամբ Հ. Համբարձումեանի եւ երգչուհի Տիկին Ն. Տէր Արսէնեանի ։ Գեղարուեստական խնամուած բաժին ։

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ
### ԱԼՖՈՐՎԻԼԻ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

Պատուոյ նախագահութեամբ Ալֆորվիլի քաղաքապետ Պ. BLEUSEի եւ հովանաւորութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Կեդր. վարչութեան ։
Կիրակի 10 Յուլիս երեկոյեան ժամը 8.30ին, Ալֆորվիլի Salle des Fêtesի շքեղ սրահին մէջ, 22 rue Voltaire:
Երգեր, արտասանութիւններ եւ տրամախօսութիւններ ։



Այրի Տիկին Նարդուհի Մ. Տէմիրճեան, Այրի Տիկին Մարիամ Կըկըզեան, Տէր եւ Տիկին Համբար Համբարեան եւ զաւակները, Պ. Յակոբ Համբարեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Բանիկ Համբարեան (Երեւան), Պ. Պօղոս Համբարեան (Պուլկարիա) Տէր եւ Տիկին Յակոբ Էօլմէզեան եւ զաւակները, Այրի Տիկին Զարուհի Մանկիկեան, Տէր եւ Տիկին Քերոբէ Քափաճեան, Տիկին Մարգրիտ Գազանճեան (Ալպանիա), Պ. Մովսէս Թորոս Տէմիրճեան (Երեւան), Պ. Կարապետ Արզարեան եւ զաւակները Տէր եւ Տիկին Ալիս Հէլվաճեան եւ զաւակները (Երեւան), Այրի Տիկին Մարիամ Փաշամանուկեան (Երեւան), կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, փեսին եւ ազգականին

Պ. ՄՈՎՍԷՍ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ (Սէօլէզցի)

մահը՝ որ տեղի ունեցաւ իր բնակարանին մէջ, 56 տարեկան հասակին ։
Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր, երեքշաբթի 5 Յուլիս առտուն ժամը 10ին, իր բնակարանին մէջ 16 rue de la Défense, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Իսիի գերեզմանատունը ։

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Սէվրանի Կապոյտ Խաչի Զօրրորդ տարեվերջի դպրոցական հանդէսը այս կիրակի ժամը 3ին, Hôtel de Franceի սրահին մէջ, 23 Place de la Libération à Livry Gargan :
Eglise Pantinէն 147 թիւ օթօպիւսը, իջնել Place de la Libération:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ Լիոնի բոլոր ընկերները 8 յուլիս ուրբաթ իրիկունժամը ճիշդ 8ին դպրոցին սրահը, 178 rue Rabelais ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱԼԱՆՍԻ Կապ. Խաչի մասնաճիւղի դաշտահանդէսը Յուլիս 10ին, առաւօտէն մինչեւ երեկոյ, Clos de Fusainի ընդարձակ պարտէզին մէջ ։ Մանրամասնութիւնները յաջորդով ։

Ս. ՍԱՀԱԿ ՄԵՍՐՈՊԻ տօնին առթիւ այս հինգշաբթի Յուլիս 7, ժամը 10ին, պիտի կատարուի Ս. պատարագ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ ։ Կաթողիկոսական պատուիրակը, պիտի նախագահէ եւ քարոզէ ։ Հայ մշակոյթին նուիրուած այս պաշտամունքին կը հրաւիրուին Փարիզի եւ շրջակայքի բոլոր հայ դպրոցներու աշակերտութիւնը եւ ծնողները ։—

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Ֆր. Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղին դաշտահանդէսը, այս կիրակի ամբողջ օրը Chateau de la Roche Verteի գեղեցիկ պարտէզին մէջ ։ Գեղարուեստական ճոխ բաժին եւ մատչելի պիւֆէ ։ Ներկայ կ'ըլլան Տէր եւ Տիկին Մարութեաններ ։ Եւրոպական պարերը կը սկսին ժամը 4էն մինչեւ կէս գիշեր, որուն համար վարձուած է առաջնակարգ նուագախումբ մը ։ Շրջաններէն եկողներ կրնան առնել 7 թիւ հանրակառքը եւ իջնել St. Julien :

ԴՊՐՈՑԱՍԷՐ Տիկնանց վարժարանի ամավերջի հանդէսը այս շաբաթ օր, կէսօրէ վերջ ժամը 4ին, վարժարանին մէջ, 1 Պուլըվար տիւ Նօռ, Լը Րէնսի ։ Հաղորդակցութիւն .— Էկլիզ տը Բանթէնէն առնել 146 թիւ օթօպիւս եւ իջնել Րէնսի Փավիյեօն ։

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍՆԵՐ

Փոն տ'Օպնայի Ֆր. Հ. Կապոյտ Խաչի դպրոցի տարեվերջի հանդէսը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հանդիսասրահը ։





**Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - (13)**
**La Gérant : A. NEKCESSIAN**

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

